վճարէ 140 մառք: Ցոտոյ, 3.50 առ 100էն 4.50 առ 100ի կը բարձրանա բանուորներու ապահովագրութեան եւ գործազրկութեան տուրքը 10 առ 100 բացառիկ տուրք մը պիտի հաստատուի ամուրիներու եկամուտին վրայ եւն.:

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

*ԶՕՐ. ԿՈՒՌՕ էնկիւրիէն մեկնեցաւ, «կեցցէ՛ Թուրքիա» պոռալով կայարանին մէջ, Թուրքերէն:*

*ԻՆՔՆԱՇԱՐԺԻ ՎԱՐԻՉՆԵՐՈՒ բազմաթիւ կեղծ արտօնագիրներ տրուած ըլլալով Փարիզի մէջ, քննութեան ձեռնարկուած է: Նախապէս 300 կը հաշուէին այդ արտօնագիրներուն թիւը, բայց այժմ 1600ի մասին կը խօսին:*

«Ցէփլին»ը, Ամերիկայէն Գերմանիա վերադարձաւ շաբաթ օր, կատարեալ կանոնաւորութեամբ: Մեկնած էր Մայիս 18ին, որով 26,400 քիլոմեթր ճամբորդութիւն կատարած կ'ըլլայ:

*ԽԼՐՏՈՒՄՆԵՐԸ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻՆ ֆրանսական գաղթավայրերուն մէջ: Շօլոնի մէջ (Քոչինչին) տեղացիները նոր ցոյց մը կատարեցին, առաջնորդութեամբ կնոջ մը: Ոստիկանութիւնը կրակ ըրաւ, սպաննելով երեք եւ վիրաւորելով 12 հոգի:*



Le Gérant H. STEPHAN

կու անդամները, Պ. Պայթին եւ Սթրոպէրկ, եա կանչուած են, ինչպէս գրած էինք երէկ: Պաշտօնական զեկոյցը կ՚ըսէ թէ երկուքն ալ մերժած ըլլալով Մոսկուա դառնալ, գերագոյն ատեանը օրէնքէ դուրս հռչակեց զանոնք, եւ վճռեց գրաւել անոնց ինչքերը: Վկաներու յայտարարութեան համաձայն, Պ. Պայթին ապօրէն դիւրութիւններ տուած է ֆրանսական Տուներու եւ տետրակներ կեղծեր է ի վնաս պետութեան, մեծ կորուստներ պատճառելով: Իսկ Սթրոմպէրկ կաշառուելով օտար Տուներէ, ապօրէն զեղչեր ըրեր է Խորհրդային Միութենէն արտածուած ատաղձի գիներուն վրայ: Այս կերպով, խորհրդային կազմակերպութիւնները 400,000 րուբլի կորուստ ունեցեր են:

*** Մոսկուայէն կը հեռագրեն թէ պաշտօնէն արձակուեցաւ հաղորդակցութեանց գործավար Ռուցուտաք: Իրեն յաջորդեց տնտեսական Գերագոյն Խորհուրդի նախորդ փոխ-նախագահ Ռուխիմովիչ:

## Անգործութիւնը Գերմանիոյ եւ Անգլիոյ մէջ

Գերմանական տեղեկագրի մը համաձայն, մինչեւ մայիս 31 նպաստընկալ գործազուրկներու թիւն էր 1,889,000, իսկ անգործներու ընդհ. թիւը՝ 2,637,000. ինչ որ կը նշանակէ 1,290,000 հոգի աւելի՝ բաղդատելով անցեալ տարուան նոյն ժամանակաշրջանին հետ եւ 90,000 աւելի՝ քան երկու շաբաթ առաջ:

Անգլիոյ անգործներուն վերջին գումարն է 1,775,000: Անգլիոյ բնակչութիւնն ըլլալով 44,500,000, իսկ Գերմանիոյ բնակչութիւնը 63,000,000, իւրաքանչիւր երկրի գործազուրկներուն թիւն է Գերմանիոյ մէջ՝ 24էն մէկ, Անգլիոյ մէջ՝ 25էն մէկ:

## Ապստամբութեան վախ Հունգարիոյ մէջ

«Տէյլի Թելէկրաֆ»ի Թղթակիցը կը հեռագրէ Փեշթայէն.— Եթէ կառավարութիւնը արագ միջոցներ ձեռք չառնէ, դարման տանելու համար հողագործ դասակարգին մէջ տիրող թշուառութեան, գիւղացիական ապստամբութիւն մը կրնայ ծագիլ: Այս ծանրակշիռ ազդարարութիւնն եղաւ խորհրդարանին մէջ, պահպանողական կուսակցութեան կարեւոր անդամներուն կողմէ: Երկուքն ալ դատապարտեցին կառավարութեան անգործութիւնը եւ մեղադրեցին թէ կը ծածկէ վտանգը, առանց դարման տանելու խռովութեանց: Տոքթ. Վոլֆ յայտարարեց թէ Զիօնկրատ քաղաքին մէջ, անցեալ շաբթու անգործ գիւղացիներու պատուիրակութիւն մը ներկայացած է ոստիկանութեան եւ խնդրած է որ արտօնութիւն տայ սովահարներուն քանի մը ժամ թալանելու խանութները:

Երկար բանակցութիւններէ յետոյ միայն կարելի եղած է ետ կեցնել գիւղացիները: Հարցապնդողներէն կոմս Հունիատի յայտարարեց թէ ինք անկեղծ պահպանողական մըն է, բայց պարտք կը սեպէ ազգին ազդարարել անխուսափելի աղէտը: Իսկ Տոքթ. Վոլֆ՝ անդամ կառավարական կուսակցութեան եւ նախագահ Փեշթայի քաղաքապետական խորհուրդի կառավարական խմբակին:

## Վեց հարիւր ձերբակալութիւն Շիքակոյի մէջ

Շիքակոյի ոստիկանութիւնը հինգշաբթի օր յանկարծ կոխեց քաղաքին բոլոր վատահամբաւ վայրերը, զինուած՝ գնդացիրներով եւ արտասովոր ռումբերով: Առաջին առթիւ ձերբակալուեցան 600 հոգի, այր թէ կին, իբրեւ աւազակ կամ մաքսանենգ (ոգելից ըմպելիներու): Ձերբակալուեցան նաեւ ծանօթ ընկերութեան մը վեց անդամները, որոնց վրայ գտնուեցաւ 1,500,000 ֆր.ի գումար մը: Բայց բուն վարիչները հոտ առած ըլլալով, փախան: Աւազակները անցեալ օր սպաններ էին «Շիքակօ Թրիպիւն»ի մէկ լրաբերը:
















## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ՔՐԻՍՏԱՓՈՐ խումբի ժողովը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9ին Ֆլօրիայի վերնայարկը: Պարտաւորիչ ներկայութիւն: Ներկայ կ՚ըլլան Կ. Կ.ի եւ փարիզի կոմիտէի ներկայացուցիչները:

ՊԵԼՎԻԼԻ Ռոստոմ կոմիտէի ժողովը վաղը կիրակի առաւօտ ժամը 10ին 131 Fbg. du Temple Պարտաւորիչ ներկայութիւն:

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէի ժողովը վաղը կիրակի իրիկուն ժամը 7ին սովորական հաւաքատեղին:

ԻԹԱԼԻԻ Աղբիւր Սերոբ խումբի ժողովը՝ վաղը կիրակի ցերեկ ժամը 2.30ին 184 Ave. d'Italie. ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ Պ. Միութեան ընդհ. ժողովը՝ այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8ին 63 Րիւ տը լա Րէփիւպլիք: Ներկայանալ անդամատետրով: կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. միութեան ընդհ. ժողովը՝ այս իրիկուն ժամը 8ին 63 Րիւ տը լա Րէփիւպլիք, Գրադարան-ընթերցասրահին մէջ:

ՏԷՍԻՆԻ Պ. միութեան ընդհ. ժողովը՝ վաղը կիրակի ժամը 9ին սովորական սրահին մէջ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ո. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի ընկերային դաշտագնացութիւնը վաղը կիրակի առաւօտ ժամը 6.30ին: Ներկայ ըլլալ որոշեալ ժամին Bld. Garibaldiի կայարանը եւ առնել հանրակառք 15, 16, 40 եւ 39 ու իջնել՝ Վալ Պառել: ճաշը միասին բերել:

ԳԱՒԱՌԷՆ եկած ընկերներ որոնք կը բնակին Պէլվիլի շրջանին մէջ կը հրաւիրուին ներկայանալ Ռոստոմ ենթակոմիտէին այս կիրակի առաւօտ ժամը 10 12: 131 Fbg. du Temple:

ՍԱՆԱՍԱՐԵԱՆ Բարերարին եւ անոր կտակատար Կ. Եղիանցի մահուան տարեդարձին առթիւ, վաղը կիրակի 15 յունիս, հանդիսաւոր հոգեհանգիստ փարիզի եկեղեցիին մէջ: կը հրաւիրուին բոլոր Սանասարեան սաները եւ այս երկու մեծ հայերուն յիշատակը յարգող հայրենակիցները:

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

Վ. Իրանեան.— Այդպէս պիտի շարունակուի: կը խնդրուի նորէն ղրկել պակաս թիւերու ցանկը:

Օր. Մխ. Սօֆիա.— կը խնդրուի պատասխանել մեր մայիս 16 թուակիր նամակին:

Պ. ԱՐԱՄ Գարաճեանէ կը կը խնդրուի իր հասցէն իմացնել «Յառաջ»ի վարչութեան:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Վանեցի Միքայէլ Վարդանեան Մարտիրոսեան կը փնտռէ Յովհաննէս Քիւրքճեան (Վ.ան, Այգեստան): իմացնել՝ Միքայէլի, քաֆէ «Բիրժա», Թաւրիզ:

— Կը փնտռուի Աֆիոն Գարահիսարցի Հայկ Ճօրճօրեան որ այժմ կը գտնուի Մարսէյլ:

Իմացնել «Յառաջ»ի վարչութեան:

— Կը փնտռուի Էնկիւրի նահանգին Ստանօս գիւղէն Յակոբ Զօպանեան 27—28 տարեկան, հօր անունը՝ Պօղոս, մօր՝ անունը Մարիամ: 1920ին կը գտնուէր իր մեծ մօրը քով Մերսին: Այդ թուականին մեկնած է Դամասկոսէն Պոլիս երթալու համար: Կիլիկիոյ ճամբուն վրայ տեսնուած է հայրենակիցի մը կողմէ: Իր մասին ստոյգ տեղեկութիւն տուողին 1000 ֆրանք նուէր: Իմացնել իր եղբօրը Գրիգոր Զօպանեանի 31 Rue de Fossé, Issy-les-Moulineaux (Seine) France կամ թերթիս վարչութեան:

Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել:

— կը փնտռեմ Քէմախի վերի Բագառիճէն խօսրով Պիլպիզեան եւ զաւակները Ղազարոս, Կաթիկ, Ազատուհի, եւ հօրեղբօրորդւոյսզաւակները՝ Աւագ, Մատթէոս եւ Ծաղիկ, որոնք աքսորուած են 1915ին: Իզմիրի դէպքէն ամիս մը առաջ Մալաթիայէն լուր առնուած է աղջիկը Կաթիկէն: Անկէց ի վեր լուր չկայ: իրենց մասին ստոյգ տեղեկութիւն տուողին 500 ֆր. նուէր, իմացնել՝ H. Hougasian, Mazagan: Maroc: կամ «Յառաջ»ի: կը խնդրուի սուրիահայ եւ յունահայ թերթերէն արտատպել:

— Սեբաստիոյ Ղարւա գիւղէն օր. Էլմաս Պարոնեան, հօր անունը՝ Խաչատուր, մօր անունը՝ Նարօ կը փնտռէ իր մօրեղբայրը Մինաս Մարկոսեան (Սեբաստիոյ Եէնիճէ գիւղացի), որ 1920 - 1924 կը գտնուէր New-York City, Ամերիկա եւ կը թղթակցէր իր մօր հետ, իմացնել Elmas Baronianի, c)o Katri Frères, Beyrouth, (G. Liban).









IMPRIMERIE - MASSIS - ÉDIT[...]
208bis, Rue Lafayette Paris

Le Gérant H. STEPHA[...]

Le Gérant H. STEPHAN

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

Բազմաթիւ հնդիկ կիներ հաւաքուած էին քաղաքին Մէյտան կոչուած հրապարակը, մանակցելու համար կամաւորներու ցոյցին։ Ոստիկանապետը հրամայեց կիներուն որ ցրուին։ Հնդկուհիները ո՛չ միայն մերժեցին, այլեւ, երբ ոստիկանութիւնը սկսաւ յարձակում գործել այրերուն վրայ, զանոնք պաշտպանելու համար, շղթայ կազմեցին անոնց շուրջ։

Ոստիկանութիւնը ստիպուեցաւ բուռն յարձակումներով ցրուել ցուցարարները, որոնք խումբ-խումբ կը հասնէին հրապարակ եւ որոնց թիւը կը գնահատուի մօտ 150000։

Հնդիկ ազգ. խորհուրդը իբր բողոքի ցոյց հրահանգեց դադրեցնել ամէն աշխատանք եւ սուգի օր յայտարարեց։

⁂ Փոթորիկն ու տեղատարափ անձրեւները արգիլեցին հսկայ ցոյց մը որ հնդիկ ազգ. խորհուրդին հրահանգով, պիտի կատարուէր միայն կիներու կողմէ, հակառակ ոստիկանութեան խիստ ու կտրուկ հրամաններուն։

ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆ Կ՛ՈՒԶԵՆ

Մոթիլալ Նէհրու որ կանտիի բանտարկումէն ի վեր, ստանձնած է ազգայնական շարժումին ղեկավարութիւնը, անգլիական թերթի մը մասնաւոր թղթակցին յայտարարեց թէ, հակառակ Հնդկաստանի անգլ. իշխանութեան հաւաստիքներուն, ազգ. շարժումը մարելու վրայ չէ, եւ թէ կարելի չէ զայն խեղդել գաւազանի հարուածներով կամ հրամանագիրերով։

— Ներկայ շարժումը կը տարբերի նախորդներէն անով որ, յեղափոխականներուն միջեւ չկան կրօնական վէճեր։ Հնդկաստանի բոլոր համայնքները մտած են հնդիկ ազգ. համագումարին դրօշին տակ եւ թէ շարժումը իսկապէս ազգային է։

«Եթէ Լոնտոն պիտի երթանք բանակցելու համար Հնդկաստանի իբր գաղութ տրուելիք իրաւասութիւններուն մասին, պիտի մերժել հրաւէրը։ Իսկ եթէ Լոնտոնի խորհրդաժողովը պիտի գումարուի մշակելու համար ազատ Հնդկաստանի սահմանադրութիւնը, ի հարկէ, մեր երկրին պայմաններուն համապատասխան կարգադրութիւններով ու սահմանափակումներով, այդ պարագային, տրամադիր եմ ազգ. համագումարին յանձնարարելու որ ընդունի բրիտանական կառավարութեան հրաւէրը։ Հնդկաստան պէտք է ինքն իր տէրը դառնայ»։

## Փոքր-Համաձայնականները

Փոքր-Համաձայնական պետութիւններու արտաքին նախարարները խորհրդակցական ժողով մը պիտի ունենան որ պիտի տեւէ 25-28 յունիս։

Օրակարգի վրայ են ընդհանուր քաղաքական կացութիւնը, Պրիանի յիշատակագիրը, Արեւելեան վերանորոգումներու մասին Փարիզի եւ Հաճէի դաշնագրերու կիրարկումը, ինչպէս նաեւ Փոքր-Համաձայնական երկիրներու միջեւ տնտեսական յարաբերութիւնները։

## Եգիպտոսի նախարարական տագնապը

Իսմայիլ Սըտքը փաշայի դահլիճին կազմութենէն յետոյ, Ֆուատ Թագաւոր մէկ ամիս յետաձգեց Խորհրդարանի շրջանը։

Հակառակ այս յետաձգման, մասնաւոր հեռագիր մը կը յայտնէ թէ ծերակուտականներն ու երեսփոխանները մտադիր են ժողովի նստելու։

Եթէ այս որոշումը գործադրուի, հաւանական է որ խռովութիւններ ծագին։

Միւս կողմէ, կ'ըսուի թէ Իսմայիլ Սըտքը փաշա մտադրութիւն ունի եգիպտական Ծերակոյտն ու Խորհրդարանը մէկի վերածելու։

Հետզհետէ կը պարզուի նախարարական տագնապին ներքին ծալքը։ Սահմանադրութեան շուրջ Ֆուատ Թագաւորի հետ վէճը, հրաժարելու պատրուակ մըն էր Նահաս փաշայի համար, որ տնտեսական ու ելմտական ծանր կացութեան մը առջեւ կը գտնուէր։ Բամպակը շարունակական անկումի մէջ է։ Նահասի բոլոր ջանքերը՝ անկումը կասեցնելու ոչ միայն ձախողեցան, այլեւ ազդեցին նաեւ արժեթուղթերուն վրայ։

Այս է, կը կարծուի, Նահաս փաշայի հրաժարման բուն պատճառը։





## Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր Ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Պարտաւորիչ ներկայութիւն։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Էնկիւրի նահանգին Ստանոս գիւղէն Յակոբ Չօպանեան 27—28 տարեկան, հօր անուն՝ Պօղոս, մօր՝ անուն Մարիամ։ 1920ին կը գտնուէր իր մեծ մօրը քով Մերսին։ Այդ թուականին մեկնած է Դամասկոսէն Պոլիս երթալու համար։ Կիլիկիոյ ճամբուն վրայ տեսնուած է հայրենակիցի մը կողմէ։ Իր մասին ստոյգ տեղեկութիւն տուողին 1000 ֆրանք նուէր։ Իմացնել իր եղբօրը Գրիգոր Չօպանեանի 31 Rue dc Fossé, Issy-les-Moulineaux (Seine) France կամ թերթիս վարչութեան։

Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել։

— կը փնտռեմ քէմախի վերի բագառիճէն խոսրով իլպիզեան եւ զաւակները ղազարոս, կաթիկ, Ազատուհի, եւ հօրեղբօրորդւոյսզաւակները՝ Աւագ, Մատթէոս եւ Ծաղիկ, որոնք աքսորուած են 1915ին։ իզմիրի դէպքէն ամիս մը առաջ Մալաթիայէն լուր առնուած է աղջիկը կաթիկէն։ Անկէց ի վեր լուր չկայ։ իրենց մասին ստոյգ տեղեկութիւն տուողին 500 ֆր. նուէր, իմացնել՝ H. Hougasian, Mazagan: Maroc: կամ «Յառաջ»ի։ կը խնդրուի սուրիահայ եւ յունահայ թերթերէն արտատպել։

— Պուրկազէն (Պուլկարիա) Թադէոս քհնյ. փորիաճեան կը փնտռէ գեղամ Մարկոսեանը (Զմիւռնիացի), որդին փաստաբան Մարկոսեանի, որ եղած է պաշտօնեայ Գասապայի երկաթուղւոյ ընկերութեան մէջ։ Զմիւռնիոյ ծանօթ աղէտէն յետոյ մեկնած է Գերմանիա։ Տեղեկութիւն ունեցողներէն եւ հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել՝ հետեւեալ հասցէին, Père Tatéos Poryadjian, Eglise Arménienne, Bourgas, (Bulgarie).



IMPRIMERIE - MASSIS - EDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN

